Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



№ 23 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1958

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ: Հեռախոս՝ 2—52—75:




# ԶՐՈՒՅՑ ՍՍՌՄ ԵՎ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՅՈԹՆԱՄՅԱ ՊԼԱՆԻ ՄԱՍԻՆ

Սովետական ժողովուրդը, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ կենսագործելով մեր երկրում սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման լենինյան պլանը, համաշխարհային պատմական նշանակություն ունեցող հաջողություններ է ձեռք բերել էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման, բնակչության կենսամակարդակի բարձրացման գործում:

Այժմ Սովետական Միությունն ունի հզոր, բազմակողմանիորեն զարգացած արդյունաբերություն, տրանսպորտ, բարձր մեքենայացված սոցիալիստական գյուղատնտեսություն: Գիտության և կուլտուրայի զարգացմամբ ՍՍՌՄ-ը կանգնած է ամենաառաջնակարգ տեղերից մեկում: Առանձնապես նշանակալի են արդյունաբերության բնագավառում ձեռք բերված հաջողությունները:





ՍՍՌՄ արդյունաբերության համախառն արտադրանքն այժմ գերազանցում է 1913 թվականի մակարդակը 36 անգամ։ 1958 թվականին պողպատի ձուլումը կկազմի մոտ 55 միլիոն տոննա, իսկ նավթի հանույթը՝ 113 միլիոն տոննա։ Դա նշանակում է, որ ներկայումս մեր երկրում մեկ ամսում ձուլվում է ավելի շատ պողպատ և արդյունահանվում է ավելի շատ նավթ, քան ամբողջ 1913 թվականին։ 1958 թվականին էլեկտրաէներգիայի արտադրությունը հասնում է 233 միլիարդ կիլովատ-ժամի։ Ներկայումս մեր երկրում յուրաքանչյուր երեք օրում արտադրվում է այնքան էլեկտրաէներգիա, որքան ցարական Ռուսաստանում մեկ տարում։ Քիմիական արդյունաբերության արտադրանքի ծավալով ՍՍՌՄ-ը այժմ աշխարհում գրավում է երկրորդ տեղը։ Առանձնապես բուռն տեմպերով է զարգացել մեքենաշինությունը։ Ներկայումս Սովետական Միությունում տարեկան արտադրվում են՝ 138 հազար մետաղահատ հաստոց, 1913 թվականի 1,5 հազարի դիմաց, 220 հազար տրակտոր, 10 հազար էքսկավատոր, ավելի քան 500 հազար ավտոմեքենա։

Ծանր ինդուստրիայի արագ զարգացման և գյուղատնտեսական արտադրության անընդ-



հատ վերելքի բազայի վրա բուռն զարգացում է ապրում թեթև և սննդի արդյունաբերությունը։ Սպառման առարկաների արտադրությունը 1958 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, կավելանա 14 անգամ, ընդ որում կուլտուր-կենցաղային ապրանքների արտադրությունը՝ ավելի քան 45 անգամ։

Ժողովրդական տնտեսության զարգացումն արագացնող կարևորագույն գործոն եղավ արդյունաբերության և շինարարության կառավարման վերակառուցումը՝ ժողտնտխորհների ստեղծումը, որը կարճ ժամանակամիջոցում դրսևորեց արդյունաբերության կառավարման նոր ձևի հսկայական առավելությունները։

Վերջին տարիների ընթացքում պարտիայի և կառավարության ձեռնարկած մի շարք միջոցառումների շնորհիվ նոր վերելք ապրեց մեր սոցիալիստական գյուղատնտեսությունը, զգալիորեն ավելացավ գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ Կարճ ժամանակամիջոցում յուրացվեցին 36 միլիոն հեկտար խամ ու խոպան հողեր։ Վերջին հինգ տարում, նախորդ հինգ տարվա համեմատությամբ, հացահատիկային կուլտուրաների արտադրության միջին տարեկան

չափերն ավելացան 38 տոկոսով, բամբա-
կինը՝ 20 տոկոսով, վուշաթելինը՝ 76 տոկո-
սով, շաքարի ճակնդեղինը՝ 66 տոկոսով,
արևածաղկինը՝ 65 տոկոսով և այլն։
Մսի արտադրությունը, հաշվի առնելով
նախրի աճը, 1957 թվականին, 1953 թվա-
կանի համեմատությամբ, ավելացավ 1,4
անգամ, կաթինը՝ 1,5 անգամ, ձվինը՝ 1,4
անգամ, բրդինը՝ 1,2 անգամ։ Կոլտնտեսու-
թյուններում 1958 թվականին մեկ կովի
միջին կաթնատվությունը, 1953 թվականի
1016 կիլոգրամի դիմաց, կկազմի մոտավո-
րապես 1.900 կիլոգրամ։
Մեծ ծաղկում է ապրել սովետական գի-
տությունը։
1954 թվականից Սովետական Միությու-
նում գործում է աշխարհում առաջին ատո-
մային էլեկտրակայանը։ Ընթացիկ տարում
գործարկվեց 600 հազար կիլովատ կարողու-
թյամբ աշխարհում ամենախոշոր ատոմային
էլեկտրակայանի առաջին հերթը՝ 100 հազար
կիլովատ հզորությամբ։ Շուտով կավարտվի
«Լենին» ատոմային սառցահատի կառուցու-
մը։ Ստեղծվել է լարված մասնիկների աշ-
խարհում ամենահզոր արագացուցիչը՝ մինչև
10 միլիարդ էլեկտրոնավոլտ էներգիայով,
հաջողությամբ կազմակերպվել է միջմայր-



ցամաքային բալիստիկ հրթիռների արտա-
դրությունը։ Մարդկության պատմության մեջ
նոր՝ տիեզերական տարածության յուրացման
դարագլուխ բացեց երկրի սովետական
արհեստական արբանյակների արձակումը։
Կատարվում է դեպի երկնային մարմիններ
թռիչքներ գործելու նախապատրաստու-
թյուն։
Վերջին տարիներս զգալիորեն բարելավ-
վել է ժողովրդի նյութական բարեկեցությու-
նը։ ՍՄԿԿ XX համագումարի որոշումներին
համապատասխան կիրառվեցին այնպիսի
խոշոր միջոցառումներ, ինչպես բանվորների
ու ծառայողների ցածր վարձատրվող կատե-
գորիաների աշխատավարձի բարձրացումը,
նախատոնական և նախահանգստյան օրերին
աշխատանքային օրվա կրճատումը, ծանր
արդյունաբերության մի շարք ճյուղերի բան-
վորների ու ծառայողների փոխադրումը
կրճատ աշխատանքային օրվա, պետական
կենսաթոշակների նոր օրենքի ընդունումը և
այլն։
Լենինյան ազգային քաղաքականության
հետևողական կիրառման շնորհիվ տնտե-
սական ու կուլտուրական հսկայական վե-
րելք են ապրել անցյալում հետամնաց ազ-
գային ռեսպուբլիկաները։ Նրանք այժմ ու-

նեն ժամանակակից հզոր արդյունաբերություն, զարգացած սոցիալիստական գյուղատնտեսություն, գիտական, ուսումնական և կուլտուր-լուսավորական հաստատությունների լայն ցանց և բազմաթիվ որակյալ կադրեր։

Էկոնոմիկայի բոլոր բնագավառներում ձեռք բերած իր վիթխարի հաջողություններով ՍՍՌՄ-ը զգալի քայլ կատարեց տընտեսական հիմնական խնդրի լուծման գործում։ Արդյունաբերական արտադրանքի մի շարք հիմնական տեսակների արտադրության բացարձակ մակարդակով (չուգուն, պողպատ, ածուխ, էլեկտրաէներգիա, ցեմենտ և այլն) նա առաջ է անցել կապիտալիստական զարգացած այնպիսի երկրներից, ինչպիսիք են՝ Անգլիան, Արևմտյան Գերմանիան, Ֆրանսիան։ Զգալիորեն կրճատվել է այն տարածությունը, որ մեր երկիրն ԱՄՆ-ից անջատում է սև մետաղի արտադրությամբ, երկաթի հանքաքարի և ածխի արդյունահանությամբ, մի շարք մեքենաների, սարքերի և բամբակե գործվածքների արտադրությամբ։

Վերջին տարիներս ՍՍՌՄ-ը ԱՄՆ-ից անցավ ոչ միայն աճի տեմպերով, այլև երկաթի հանքաքարի, չուգունի, պողպատի, նավթի, ածխի, ցեմենտի և արտադրանքի մի շարք այլ տեսակների ամենամյա բացարձակ աճով, իսկ բրդե գործվածքների, փայտի ու սղոցանյութերի, յուղի արտադրությամբ, ցորենի, շաքարի ճակնդեղի ու կարտոֆիլի բերքով գերազանցեց ԱՄՆ-ի մակարդակը։



Շնորհիվ Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների տնտեսական անշեղ զարգացման, զգալիորեն աճել է սոցիալիստական սիստեմի տեսակարար կշիռը համաշխարհային արտադրության մեջ։ Նախնական տվյալներով սոցիալիստական երկրների արդյունաբերական արտադրության ծավալը կմեծանա նրանց տերիտորիաներում, 1937 թվականի արտադրության մակարդակի համեմատությամբ, 4,9 անգամ։ Դա ավելի ու ավելի լիակատար չափով է բացահայտում սոցիալիզմի անվիճելի առավելությունները կապիտալիզմի հանդեպ։

Այժմ արդեն մեր երկիրը հասել է զարգացման այնպիսի բարձր մակարդակի, որը նրան հնարավորություն է տալիս թևակոխելու տնտեսական շինարարության նոր ժամանակաշրջանը՝ կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամա-

նակաշրջանը, որի գլխավոր խնդիրներն են՝ կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի բազմակողմանի ստեղծումը, մեր սոցիալիստական Հայրենիքի տնտեսական և պաշտպանական հզորության հետագա ամրապնդումը, սովետական ժողովրդի նյութական և հոգևոր անընդհատ աճող պահանջմունքների ավելի ու ավելի լրիվ բավարարումը։ Դա վճռական էտապ կհանդիսանա երկու սիստեմների՝ սոցիալիզմի և կապիտալիզմի խաղաղ տնտեսական մրցության մեջ, երբ գործնականորեն կլուծվի ՍՍՌՄ-ի հիմնական տնտեսական խնդիրը՝ բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի քանակով հասնել և անցնել առավել զարգացած կապիտալիստական երկրներից։

Կոմունիստական պարտիան սովետական ժողովրդի առջև խնդիր է դրել առաջիկա 15 տարիների ընթացքում հասնել և անցնել առավել զարգացած կապիտալիստական երկրներից ո՛չ միայն արտադրանքի ընդհանուր ծավալով, այլև բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի քանակով։ Դա նշանակում է մոտակա 15 տարում ՍՍՌՄ արդյունաբերության վճռական ճյուղերի արտադրանքն ավելացնել 2—3 անգամ, այդ թվում երկաթաքարի արտադրությունը, 1957



թվականի համեմատությամբ, 3,5 անգամ, նավթինը՝ 4 անգամ, գազինը՝ 13—15 անգամ, չուգունինը և պողպատինը՝ 2,3 անգամ, էլեկտրաէներգիայինը՝ 4,3 անգամ, ցեմենտինը՝ 4 անգամ։ Սոցիալիստական գյուղատնտեսությունը պետք է ապահովի մթերքների այնպիսի առատություն, որը լրիվ կերպով բավարարի սովետական մարդկանց պահանջմունքները։ Դրանով իսկ մեր Հայրենիքը արտադրանքի ընդհանուր ծավալով և մեկ շնչին ընկնող արտադրանքի քանակով դուրս կգա առաջին տեղն ամբողջ աշխարհում։

Ժողովրդական տնտեսության զարգացման մոտակա 15 տարիների հեռանկարային պլանը հանդիսանում է ՍՍՌՄ-ում կոմունիզմի կառուցման տնտեսական ծրագիրը։ Սովետական Միության զարգացման մոտակա 15 տարվա հեռանկարային պլանով նախատեսվում է ստեղծել անհրաժեշտ պայմաններ դեպի կոմունիզմ կատարվող անցումն ավարտելու համար։ Այդ ծրագրի բաղկացուցիչ մասն են կազմում 1959—1965 թվականների կոնտրոլ թվերը, որոնք քննարկվելու են ՍՄԿԿ XXI արտահերթ համագումարում։ 1959—1965 թ. թ. յոթնամյակի ընթացքում պետք է կենսագործվի այդ ծրա-

*գրի զգալի մասը։ Յոթնամյակի հիմնական պրոբլեմը՝ դա կոմունիզմի ուղիով ժողովրդական տնտեսության արագ զարգացման պրոբլեմն է, սոցիալիզմի և կապիտալիզմի միջև խաղաղ տնտեսական մրցության մեջ ժամանակի առավելագույն շահման պրոբլեմը։ Յոթնամյակի գլխավոր խնդիրն է՝ ծանր արդյունաբերության առավել զարգացման բազայի վրա ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի հետագա հզոր վերելքը, երկրի տնտեսական պոտենցիալի զգալի ուժեղացումը այն հաշվով, որպեսզի ապահովվի ժողովրդի կենսամակարդակի անընդհատ բարձրացումը։*

*Պարտիան յոթնամյակի կարևորագույն խնդիրն է համարում բնակչության ռեալ եկամուտների նոր, էական աճի ապահովումը, ցածր և միջին վարձատրվող բանվորների և ծառայողների աշխատավարձի զգալի բարձրացումը, սոցիալիստական կուլտուրայի հետագա վերելքը, աշխատավորների սոցիալիստական գիտակցության, բանվորների և գյուղացիների կուլտուր-տեխնիկական մակարդակի հետագա բարձրացումը։*

*Յոթնամյա պլանի կատարումը վճռական քայլ կլինի կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման և ՍՍՌՄ-ի հիմ-*



*նական տնտեսական խնդրի լուծման գործում։*

*ՍՍՌՄ արդյունաբերության համախառն արտադրանքը 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, աճելու է 80 տոկոսով, այդ թվում արտադրության միջոցների արտադրությունը («Ա» խումբ)՝ 85—88 տոկոսով, իսկ սպառման առարկաների արտադրությունը («Բ» խումբ)՝ 62—65 տոկոսով։ Յոթնամյակի վերջին տարում երկրում արտադրվելու է չուգուն 65—70 միլիոն տոննա կամ 1958 թվականի համեմատությամբ կաճի 65—77 տոկոսով, պողպատ՝ 86—91 միլիոն տոննա կամ աճը՝ 56—65 տոկոսով, գլանվածք՝ 65—70 միլիոն տոննա (աճ՝ 52—64 տոկոս), ապրանքային երկաթի հանքաքար՝ 150—160 միլիոն տոննա, նավթ՝ 230—240 միլիոն տոննա (աճ՝ 2 անգամից ավելի), գազ՝ 150 միլիարդ խորանարդ մետր, քարածուխ՝ 596—609 միլիոն տոննա, էլեկտրաէներգիա՝ 500—520 միլիարդ կիլովատ-ժամ (աճ՝ 2,2 անգամ)։ Քիմիական արդյունաբերության համախառն արտադրանքն աճելու է 3 անգամ, մեքենաշինությանը և մետաղամշակությանը՝ 2 անգամ, թեթև արդյունաբերությանը՝ 1,5 անգամ, սննդի արդյունաբերությանը՝ 1,7 անգամ,*

այդ թվում մսինը՝ (հումքի պետական ռեսուրսներից) 217 տոկոսով, կենդանական յուղինը՝ (հումքի պետական ռեսուրսներից) 160 տոկոսով, անարատ կաթնամթերքներինը՝ (կաթի վերածած) 225 տոկոսով, շաքարինը՝ 180—194 տոկոսով։

Գյուղատնտեսության համախառն արտադրանքը 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, ավելանալու է 1,7 անգամ։ Յոթնամյակի վերջին տարում նախատեսվում է հացահատիկի արտադրանքը հասցնել տարեկան 10—11 միլիարդ փթի, բամբակի հումքինը՝ 5,7—6,1 միլիոն տոննայի (աճը 1957 թվականի համեմատությամբ 35—45 տոկոս), շաքարի ճակնդեղինը՝ 70—78 միլիոն տոննայի (աճը՝ 1,8—2 անգամ), յուղատու կուլտուրաներինը՝ 5,5 միլիոն տոննայի (աճը՝ 70 տոկոս), մսինը՝ (սպանդանոցային քաշով) 16 միլիոն տոննայի (1956 թվականի համեմատությամբ աճը՝ 2 անգամ), կաթինը՝ 100—105 միլիոն տոննայի (աճը 1958 թվականի համեմատությամբ 1,7—1,8 անգամ), բրդինը՝ 548 հազար տոննայի (աճը 1,7 անգամ), ձվինը՝ 37 միլիարդ հատի (աճը 1,6 անգամ)։

Յոթնամյակում ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումները, նախորդ



յոթնամյակի՝ 1952—1958 թվականների համեմատությամբ, կաճեն 1,8 անգամ։ Դրանք մոտավորապես հավասար կլինեն Սովետական իշխանության բոլոր տարիներին կատարված կապիտալ ներդրումներին։

1959—1965 թ. թ. յոթնամյակում զգալիորեն բարձրանալու է սովետական ժողովրդի նյութա-կուլտուրական մակարդակը։ Յոթնամյակի ընթացքում ազգային եկամուտը աճելու է 62—65 տոկոսով, իսկ բնակչության սպառման ֆոնդը՝ 60—63 տոկոսով։ Բանվորների և ծառայողների ռեալ եկամուտները մեկ աշխատողի հաշվով միջին չափով աճելու են 40 տոկոսով, իսկ կոլտնտեսականներինը՝ առնվազն 40 տոկոսով։ Ցածր վարձատրվող բանվորների ու ծառայողների աշխատավարձը 270—350 ռուբլուց հասցվելու է մինչև 500—600 ռուբլու։ Նախատեսվում է 1966 թվականին իրագործել կենսաթոշակների նվազագույն չափերի նոր բարձրացում՝ քաղաքներում ծերության կենսաթոշակների համար այն հասցնելով 450—500 ռուբլու և զգալիորեն բարձրացնել նվազագույն չափերը գյուղական վայրերում, ինչպես նաև ավելացնել հաշմանդամության և կերակրողին կորցնելու դեպքում տրվող կենսաթոշակների նվազագույն չափերը։

1960 թվականին ավարտվելու է բանվորներին և ծառայողներին 7-ժամյա աշխատանքային օրվա փոխադրելը, իսկ սկսած 1964 թվականից աստիճանաբար պետք է իրականացվի անցումը 35—30 ժամյա աշխատանքային շաբաթվա, այսինքն՝ 5-օրյա աշխատանքային շաբաթվա, երկու հանգստյան օրով, 6—7 ժամյա աշխատանքային օրվա պայմաններում։ Աշխատանքային ժամերի կրճատումը կկատարվի առանց աշխատավարձի իջեցման։

Յոթնամյակի տարիներին առանձնապես մեծ զարգացում է ստանալու բնակարանային շինարարությունը։ Քաղաքներում և քաղաքատիպ վայրերում կառուցվելու և շահագործման է հանձնվելու 650—660 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն կամ 15 միլիոն բնակարան, այսինքն՝ 2,3 անգամ ավելի, քան նախորդ յոթնամյակում։ Գյուղական վայրերում կառուցվելու է 7 միլիոն բնակելի տուն։ Լայն զարգացում կըստանա առողջապահական հաստատությունների, կուլտուր-լուսավորական հիմնարկների, մանկամսուրների, մանկապարտեզների ու դպրոցների շինարարությունը։ Յոթնամյակի ընթացքում անցում կկատարվի ընդ-



հանուր 8-ամյա պարտադիր ուսուցման։ Զեկտագա ծաղկում կապրեն սովետական գիտությունը, արվեստը և գրականությունը։



ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մեջ իր վառ արտահայտությունն է գտել Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության վարած լենինյան ազգային քաղաքականությունը։ Կոնտրոլ թվերի նախագծով նախատեսվում է բոլոր ազգային ռեսպուբլիկաների, այդ թվում և Հայկական ՍՍՌ-ի տնտեսության և կուլտուրայի նոր բուռն վերելք։ Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի համաձայն ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքը 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, ավելանալու է 2,2 անգամ։ Տարեկան աճի միջին տեմպը կազմելու է 11,4 տոկոս այն դեպքում, երբ ամբողջությամբ վերցրած ՍՍՌՄ արդյունաբերության համախառն արտադրանքն աճելու է 1,8 անգամ, իսկ տարեկան աճի միջին տեմպը կազմելու է 8,6 տոկոս։

Առանձնապես բարձր տեմպերով կզարգանան արդյունաբերության այնպիսի կարևոր ճյուղերը, ինչպիսիք են՝ քիմիական արդյունաբերությունը, գունավոր մետալուրգիան, շինանյութերի արդյունաբերությունը, մեքենաշինության բոլոր ճյուղերը և հատկապես էլեկտրամեքենաշինությունը, հաստոցաշինությունը, գործիքաշինությունը և սարքաշինությունը։ Այդ ճյուղերի արագ զարգացման շնորհիվ կփոխվի նրանց տեսակարար կշիռը ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքի մեջ։ Այսպես, 1965 թվականին մեքենաշինության տեսակարար կշիռը ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքի մեջ կկազմի 23,2 տոկոս՝ 1958 թվականի 14,8 տոկոսի դիմաց, քիմիական արդյունաբերությանը՝ 17,4 տոկոս, 14,8 տոկոսի դիմաց, գունավոր մետալուրգիայինը՝ 7,4 տոկոս, 5,4 տոկոսի դիմաց։

Նախատեսվում է նոր ձեռնարկությունները տեղաբաշխելիս ելնել դրանք հումքի աղբյուրներին մոտեցնելու սկզբունքից, ձեռնարկությունների մասնագիտացման և կոոպերացման պահանջներից, աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործումից և ռեսպուբլիկայի արդյունաբերական տեսակե-



տից թույլ զարգացած մի շարք շրջաններում արդյունաբերական օջախներ ստեղծելու անհրաժեշտությունից։

Լայն մասշտաբներով միջոցառումներ կիրականացվեն ռեսպուբլիկայի էներգետիկ արդյունաբերության բնագավառում։ Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության պահանջը էլեկտրաէներգիայի նկատմամբ ավելանալու է 1,8 անգամ, որը ծածկվելու է ի հաշիվ ռեսպուբլիկայում էլեկտրաէներգիայի արտադրության ավելացման և եղբայրական Ադրբեջանից ստացվելիք էլեկտրաէներգիայի։ 1959—1960 թվականներին շահագործման են հանձնվելու Աթարբեկյանի և Երևանի հիդրոէլեկտրակայանները։ Յոթնամյակի ընթացքում կկառուցվի և շահագործման կհանձնվի Տաթևի հիդրոէլեկտրակայանը։

Էլեկտրաէներգիայի արտադրության աճի վճռական միջոց կհանդիսանա Ղարադաղից ստացվելիք բնական գազը։ 1965 թվականին ռեսպուբլիկան կստանա 1,7 միլիարդ խորանարդ մետր բնական գազ, որից 1 միլիարդ 41 միլիոն խորանարդ մետրը կօգտագործվի էլեկտրաէներգիայի և ջերմոէներգիայի արտադրության նպատակով։

Բնական գազի բազայի վրա յոթնամյակի



տարիներին ռեսպուբլիկայում մեծ զարգացում կստանա ջերմոէլեկտրակայանների կառուցումը։ Ջերմոէլեկտրացենտրալներ կկառուցվեն Երևանում և Ախտայում։ Այդ ջերմոէլեկտրոցենտրալները 7-ամյակի ընթացքում շահագործման կհանձնվեն մեծ կարողություններով։

Առաջիկա յոթնամյակում առավել արագ տեմպերով է զարգանալու գունավոր մետալուրգիան և հատկապես պղնձա-մոլիբդենային արդյունաբերությունը։ 1965 թվականին սև պղնձի ձուլումը 1958 թվականի համեմատությամբ ավելանալու է 4 անգամ, ռաֆինացված պղնձինը՝ մոտավորապես 5,6 անգամ, մոլիբդենային կոնցենտրատինը՝ ավելի քան 3,2 անգամ։

Պղնձա-մոլիբդենային արտադրության արտադրանքը ռեսպուբլիկայի հումքի հաշվին ավելացնելու նպատակով նախատեսվում է՝

ա) Քաջարանի կոմբինատի հարստացնող ֆաբրիկայի հզորության զգալի ընդլայնում, բ) 1962 թվականին շահագործման հանձնել Ագարակի կոմբինատը, գ) 1,5 անգամ ավելացնել Ջանգեզուրի հանքվարչության հա-



րըստացնող ֆաբրիկայի հզորությունը, դ) շահագործման հանձնել Ախթալայի հարըստացնող ֆաբրիկան, ե) մեծացնել Դաստակերտի հարստացնող ֆաբրիկայի հզորությունը, զ) վերակառուցել և ընդլայնել Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատը։

Գունավոր մետալուրգիայի համախառն արտադրանքի ծավալը 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, կաճի 3 անգամ։

Յոթնամյակում բուռն թափով զարգանալու է ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերությունը, որը բխում է ՍՄԿԿ Կենտկոմի 1958 թվականի Մայիսյան պլենումի որոշումից և դրան համապատասխան՝ ՀԿԿ Կենտկոմի ու Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի ընդունած որոշումներից։ Ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության համախառն արտադրանքը 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, աճելու է ավելի քան 3,4 անգամ։

Քիմիական արդյունաբերության կարևորագույն տեսակների արտադրությունը 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, ավելանալու է՝ կաուստիկ սոդայինը՝ 2,6 անգամ, սինթետիկ կաուչուկինը՝ 1,6 անգամ, հանքային պարարտանյութե-

րինը՝ 1,6 անգամ, քացախաթթվինը՝ 4,6 անգամ, սինթետիկ կաուչուկինը՝ 4,5 անգամ, ավտոդողերինը՝ մոտավորապես 1,4 անգամ և այլն։

Յոթնամյակում քիմիական արդյունաբերության մեջ որպես հումք և վառելիք լայն չափով կկիրառվի բնական գազը, որը հնարավորություն կտա զգալիորեն ավելացնելու նրա արտադրանքի ծավալը, կկառուցվեն և շահագործման կհանձնվեն ացետատային մետաքսի, կորդի, վիտամինների և այլ գործարաններ ու նոր ցեխեր, զգալիորեն կընդլայնվի այժմ բաց թողնվող արտադրանքների արտադրությունը և կարտադրվեն նոր տեսակի նյութեր։

Յոթնամյակի ընթացքում առանձնահատուկ ուշադրություն է նվիրվելու ռեսպուբլիկայի մեքենաշինության բոլոր ճյուղերի արագ զարգացմանը։ Մեքենաշինության և մետաղամշակության համախառն արտադրանքը նոր ձեռնարկությունների շահագործման և գործող արտադրական կարողությունների ընդլայնման շնորհիվ ավելանալու է 3,6 անգամ, այդ թվում էլեկտրա-տեխնիկական արդյունաբերությանը՝ 3,3 անգամ, սարքաշինությանը՝ 5,6 անգամ, հաստոցաշինությանը և գործիքաշինությանը՝ 7,7



անգամ և այլն։ Նախատեսվում է կառուցել և շահագործման հանձնել միկրոշարժիչների, էլեկտրամետաղային խեցեգործության (կերամիկայի), ռելեի, կիսահաղորդիչ սարքերի, տեխնիկական քարերի, էլեկտրոնային հաշվիչ մեքենաների, ֆրեզերային հաստոցների, հղկիչ հաստոցների և այլ գործարաններ։ Տեքստիլ արդյունաբերության մեջ կապիտալ ներդրումներն առաջիկա յոթնամյակում, նախորդ յոթնամյակի համեմատությամբ, կավելանան 3,3 անգամ։

Արդյունաբերության նոր ձեռնարկությունների կառուցման և բնակարանային շինարարության մեծ պլանների իրականացումը պահանջում է շինանյութերի արդյունաբերության բուռն զարգացում։ Ելնելով դրանից, առաջիկա յոթնամյակում նախատեսվում է կապիտալ ներդրումները շինանյութերի արդյունաբերության մեջ ավելացնել նախորդ 7 տարիների համեմատությամբ 2,5 անգամ։ Դրա շնորհիվ շարելու նյութերի արտադրությունը 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, կավելանա 1,9 անգամ, կրի արտադրությունը՝ 4,1 անգամ, գաջինը՝ 1,8 անգամ։ Զգալի չափով կաճի ցեմենտի, շիֆերի և այլ շինանյութերի արտադրությունը։

Յոթնամյակի ընթացքում ռեսպուբլիկայում կստեղծվի ազբոցեմենտային խողովակների և միջնորմային սալիկների արտադրություն։

Զգալիորեն կընդլայնվի անտառային և փայտամշակման արդյունաբերությունը։ Կահույքի արտադրությունը 1965 թվականին կհասնի 140 միլիոն ռուբլու, 1958 թվականի 77 միլիոն ռուբլու դիմաց, այսինքն՝ կաճի ավելի քան 1,8 անգամ։

Աննախընթաց արագ տեմպերով է զարգանալու ռեսպուբլիկայի ապակու և հախճապակու-ճենապակու արդյունաբերությունը։ Նրա համախառն արտադրանքը 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, ավելանալու է մոտավորապես 6,2 անգամ։ Երեսապատման սալիկների արտադրությունն ավելանալու է 10 անգամ, ապակու տարայի արտադրությունը՝ 6 անգամ։ Երևանիտի բազայի վրա ռեսպուբլիկայում կազմակերպվելու է բյուրեղապակյա առարկաների արտադրություն։

Աշխատավորների անմիջական կենսական պահանջների լրիվ բավարարման նպատակով յոթնամյակում մեծ զարգացում կստանա թեթև և սննդի արդյունաբերությունը։ Ռեսպուբլիկայի թեթև արդյունաբերության



համախառն արտադրանքի ծավալը 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, կաճի 1,8 անգամ։ Այդ ճյուղի զարգացումը կիրականացվի հիմնականում ի հաշիվ ձեռնարկությունների հետագա մասնագիտացման և կոոպերացման, նոր առարկաների արտադրության կազմակերպման, ասորտիմենտի ընդլայնման և թողարկվող արտադրանքի որակի բարելավման։ 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, բամբակե գործվածքների արտադրությունը կաճի 32,6 տոկոսով, բրդյա գործվածքներինը՝ 65,8 տոկոսով, մետաքսյա գործվածքներինը՝ 80 տոկոսով, կաշվե կոշկեղենինը՝ 70,3 տոկոսով և այլն։

Սկսած 1961 թվականից ռեսպուբլիկայում արտադրվելու են ապակեթելեր, որոնց արտադրանքը 1965 թվականին հասնելու է 1000 տոննայի։ Յոթնամյակի ընթացքում կկառուցվեն և շահագործման կհանձնվեն տրիկոտաժի ֆաբրիկան Դիլիջանում, կարի և ձեռնոցների նոր ֆաբրիկաներ Երևանում և այլ ձեռնարկություններ։

Յոթնամյակի ընթացքում թեթև արդյունաբերության մեջ կներդրվի 1,2 անգամ ավելի կապիտալ, քան նախորդ յոթնամյակում։

Սննդի արդյունաբերության համախառն
արտադրանքի ծավալը 1965 թվականին,
1958 թվականի համեմատությամբ, ավելա-
նալու է 1,7 անգամ։ Մսի արտադրությունը
նախատեսվում է 1965 թվականին հասցնել
20,6 հազար տոննայի, կենդանական յու-
ղինը՝ 2.200 տոննայի, անարատ կաթնա-
մթերքներինը՝ 45 հազար տոննայի, երշիկե-
ղենինը՝ 10 հազար տոննայի, խաղողի գի-
նիներինը՝ 5,2 միլիոն դեկալիտրի, կոնյակի-
նը՝ 0,3 միլիոն դեկալիտրի։ Հրուշակեղենի
արտադրությունը յոթնամյակի ընթացքում
աճելու է 62 տոկոսով, գարեջրինը՝ 67, հան-
քային ջրերինը՝ 78 տոկոսով։ Զգալի չափով
ավելանալու է բուսական յուղի, ծխախոտի,
գլանակների, շաքարավազի, օճառի և այլ
ապրանքների արտադրությունը։ Յոթնամյա-
կում շահագործման կհանձնվի Ավանի ա-
ղահանքը, որը 1965 թվականին արդյունա-
հանելու է 200 հազար տոննա կերակրի աղ։
Կկառուցվեն կաթի և պանրի մի շարք նոր
գործարաններ։

Յոթնամյակի ընթացքում խոշոր աշխա-
տանքներ են կատարվելու երկրի ընդերքի
ուսումնասիրման ուղղությամբ։

1959—1965 թվականներին արդյունաբե-
րության բուռն զարգացման հիման վրա ա-



րագ թափով պետք է զարգանա ռեսպուբլի-
կայի գյուղատնտեսությունը: 1965 թվակա-
նին, 1957 թվականի համեմատությամբ, հա-
ցահատիկի արտադրությունը ավելանալու է
23,2 տոկոսով, բամբակինը՝ 23 տոկոսով,
ծխախոտինը՝ 40 տոկոսով, բանջարեղենի-
նը՝ 76,7 տոկոսով, խաղողինը՝ մոտավորա-
պես 2,9 անգամ, մրգերինը՝ 3 անգամ, բո-
ժոժինը՝ 1,7 անգամ, մսինը՝ 2,1 անգամ,
կաթինը՝ 1,8 անգամ, ձվինը՝ 79,7 տոկոսով,
բրդինը՝ 2 անգամ։ Գյուղատնտեսական կուլ-
տուրաների արտադրանքի համախառն ա-
ճը հիմնականում ձեռք է բերվելու բերքա-
տվության բարձրացման միջոցով։ Հացահա-
տիկային կուլտուրաների միջին բերքատվու-
թյունը, 1957 թվականի 10,5 ցենտների դի-
մաց, 1965 թվականին պետք է հասցվի 14,1
ցենտների։ Բերքատվության բարձրացումը
պետք է ձեռք բերվի նոր սորտերի արմա-
տավորմամբ, ցանքաշրջանառության և ագ-
րոտեխնիկական կանոնների ճիշտ կիրառ-
մամբ։ Զգալիորեն պետք է ընդարձակվեն ե-
գիպտացորենի ցանքատարածությունները։
1965 թվականին բամբակի բերքատվությունը
նախատեսվում է հասցնել 27 ցենտների՝
1958 թվականի պլանով նախատեսված

22,5 ցենտների դիմաց, ծխախոտինը՝ 16 ցենտների, 12,5 ցենտների դիմաց, շաքարի ճակնդեղինը՝ 266 ցենտների, 226 ցենտների դիմաց, խաղողինը՝ 86,8 ցենտների, մրգերինը՝ 69,6 ցենտների, բանջարաղենինը՝ 209 ցենտների, 165 ցենտների դիմաց։

Ռեսպուբլիկայում անասնաբուծության հետագա զարգացման բարձր տեմպերի ապահովման վճռական պայմանը հանդիսանում է կերի արտադրության շեշտակի ավելացումը։ Յոթնամյա պլանով նախատեսվում է զգալիորեն ավելացնել կերային կուլտուրաների ցանքատարածությունները և բարձրացնել նրանց բերքատվությունը։ Կերային բազայի ամրապնդման շնորհիվ 1965 թվականին 100 հեկտար հողատարածության հաշվով կաթի արտադրությունը կհասնի 360,8 ցենտների՝ 1955 թվականի 148,2 ցենտների դիմաց, այսինքն՝ աճելու է ավելի քան 2,4 անգամ, մսի արտադրությունը (սպանդանոցային քաշով)՝ 43,5 ցենտների, 1955 թվականի 18,5 ցենտների դիմաց կամ ավելանալու է մոտ 2,4 անգամ, ձվինը՝ (100 հեկտար հացահատիկային տարածությունների հաշվով) 68,2 հազար հատի, 1955 թվականի 32,6 հազարի դիմաց կամ ավելանալու է 2,1 անգամ։



Արտադրանքի ծավալի ավելացման համապատասխան յոթնամյակի վերջում զգալիորեն կավելանան գյուղատնտեսական մթերքների մթերումները։ 1965 թվականին, 1957 թվականի համեմատությամբ, բամբակի հումքի մթերումը կավելանա 23 տոկոսով, ծխախոտինը՝ 40 տոկոսով, կարտոֆիլինը՝ 3,4 անգամ, անասուններինը և թռչուններինը (կենդանական քաշով)՝ 95,5 տոկոսով, կաթինը՝ 2,1 անգամ, բրդինը՝ 55 տոկոսով, ձվինը՝ մոտ չորս անգամ, բոժոժինը՝ 55 տոկոսով, խորդենունը՝ 7 անգամ։

Ռեսպուբլիկայում մեծ աշխատանք է տարվելու ոռոգման ցանցի հետագա ընդարձակման ուղղությամբ, որի հիման վրա պետք է նշանակալիորեն ավելացվեն խաղողի ու պտղատու այգիները և պայմաններ ստեղծվեն գյուղատնտեսական մյուս կուլտուրաների բարձր ու կայուն բերք ստանալու համար։ Ոռոգելի տարածությունները յոթնամյակում պետք է ավելանան 38 հազար հեկտարով։ Նախատեսվում է ջրովի դարձնել նաև 180 հազար հեկտար արոտավայրեր։ Ջրային տնտեսության շինարարության գծով կապիտալ ներդրումները կկազմեն մոտ 388 միլիոն ռուբլի։

Յոթնամյա պլանով նախատեսվում է ավարտել կոլտնտեսությունների համատարած էլեկտրիֆիկացման և գոյություն ունեցող էլեկտրոցանցի ընդարձակման ու վերակառուցման ուղղությամբ տարվող աշխատանքները։

Նախատեսվում է Թալինի, Արզնի—Շամիրամի և Կոտայքի ոռոգման սիստեմների ոռոգելի դարձվող տարածությունների վրա յոթնամյակի ընթացքում կազմակերպել խաղողագործական և պտղաբուծական 19 նոր սովխոզներ։ Խաղողի և պտղատու այգիների տարածությունը կավելանա 44 հազար հեկտարով։

Գյուղատնտեսության մեջ կապիտալ ներդրումների ծավալը յոթնամյակում կազմելու է 1 միլիարդ 69 միլիոն ռուբլի, նախորդ յոթնամյակի 580 միլիոն ռուբլու դիմաց, այսինքն՝ կավելանա ավելի քան 1,8 անգամ։

Զգալի չափով զարգանալու է ռեսպուբլիկայի տրանսպորտը։ Շարունակվելու է Երևան—Աղստաֆա երկաթուղու շինարարությունը։ 1965 թվականին ռեսպուբլիկայի ավտոմոբիլային տրանսպորտի բեռնաշրջանառությունը, 1958 թվականի համեմատությամբ, աճելու է մոտ երկու անգամ, ու-



ղևորների փոխադրումը ավտոբուսներով՝ 2,8 անգամ։ Յոթնամյակի ընթացքում շարք կմտնեն քաղաքային հեռախոսային 27,7 հազար նոր համարներ։

Ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանով նախատեսվող խնդիրների իրականացման համար կապիտալ ներդրումները կազմելու են ավելի քան 12 միլիարդ ռուբլի, որը կգերազանցի նախորդ յոթնամյակի կապիտալ ներդրումներին 2,2 անգամ։ Բնակարանային շինարարության գծով կապիտալ ներդրումները կկազմեն ավելի քան 3 միլիարդ ռուբլի, կամ նախորդ յոթնամյակի համեմատությամբ կաճեն ավելի քան երեք անգամ։ Յոթնամյակի ընթացքում առողջապահության, լուսավորության և կուլտուրայի բնագավառներում ներդրվելու է ավելի քան մեկ միլիարդ ռուբլի, նախորդ յոթնամյակի 395 միլիոն ռուբլու դիմաց։

Ելնելով բնակչության գնողունակությունից և հաշվի առնելով ժողովրդական սպառման ապրանքների ու գյուղատնտեսական մթերքների աճը, 1965 թվականին ռեսպուբլիկայում ապրանքաշրջանառությունը, 1958 թվականի համեմատությամբ, նախատես-

վում է ավելացնել 61 տոկոսով, այդ թվում հասարակական սննդինը՝ 56,6 տոկոսով։

Ժողովրդական սպառման ապրանքների շուկայական ֆոնդերը 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, կավելանան հետևյալ չափերով. բամբակե գործվածքներինը՝ 69,3 տոկոսով, մետաքսե գործվածքներինը՝ 60 տոկոսով, կոշկեղենինը՝ 65,6 տոկոսով, կահույքինը՝ 4,3 անգամ, մսինը և մսեղենինը՝ 98 տոկոսով, կաթինը և կաթնամթերքներինը՝ 93, շաքարինը և հրուշակեղենինը՝ 70 տոկոսով և այլն։

Բնակչության դրամական եկամուտները 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, կավելանան 53,5 տոկոսով։ 1959—1965 թվականների յոթնամյակի տարիներին ռեսպուբլիկայում լայն ծավալ է ստանալու բնակարանային շինարարությունը։ Յոթնամյակի ընթացքում պետական միջոցներով կկառուցվեն և շահագործման կըհանձնվեն 3 միլիոն 640 հազար քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ, 2 միլիոն 328 հազար քառակուսի մետր բնակելի տարածությամբ։ Բացի դրանից, պետական վարկի օգնությամբ անհատական բնակարանային շինարարության գծով շահագործման կհանձնվի 2 միլիոն 75



հազար քառակուսի մետր ընդհանուր տարածություն, իսկ ձեռնարկությունների միջոցներով՝ 127 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։ Բնակարանային շինարարության այդպիսի ծրագրի իրագործումը կարևոր քայլ կլինի ռեսպուբլիկայում բնակարանային պակասը վերացնելու ուղղությամբ։

Առաջիկա յոթնամյակում հետագա բուռն զարգացում կստանան ժողովրդական կրթությունը, առողջապահությունը, գիտությունը և կուլտուրան։ 1965 թվականին լուսավորության մինիստրության մասսայական դպրոցներում սովորողների թիվը կըհասնի մոտավորապես 400 հազար մարդու՝ 1958—1959 ուսումնական տարվա 274 հազար մարդու դիմաց։ Գիշերօթիկ դպրոցներում սովորողների թիվը հասնելու է 24.000 մարդու՝ 1.500 մարդու դիմաց։

Զգալի չափով ընդարձակվելու է մանկապարտեզների ցանցը։ 1965 թվականին մանկապարտեզներում կընդգրկվեն 35 հազար երեխաներ, 1958 թվականի 18,5 հազարի դիմաց։

Կկառուցվեն բազմաթիվ նոր գրադարաններ, ակումբներ, կընդլայնվի կինոթատրոնների ցանցը։

Յոթնամյակում զգալիորեն բարելավվելու է աշխատավորների բուժսպասարկումը։ 1965 թվականին հիվանդանոցներում մահճակալների թիվը հասցվելու է 18.900-ի, որը 7.390 մահճակալով ավելի է 1958 թվականի համեմատությամբ։ Յոթնամյակի վերջում մանկամսուրների տեղերը կհասնեն 13,1 հազարի, կամ 1958 թվականի համեմատությամբ կավելանան 6.940 տեղով։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը միջազգային հսկայական նշանակություն ունի։ Նրա իրականացումը մի նոր կարևորագույն փուլ կլինի կապիտալիստական սիստեմի հետ խաղաղ տնտեսական մրցության մեջ սոցիալիստական սիստեմի հաղթանակի ապահովման գործում։ Այդ պլանը Սովետական Միության կողմից հետևողականորեն իրագործվող խաղաղասիրական քաղաքականության, երկու սիստեմների խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքի ամենավառ արտահայտությունն է։

Յոթնամյա պլանի կատարման շնորհիվ Սովետական Միությունը բնակչության մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքի քանակով կգերազանցի Եվրոպայի առավել զարգացած կապիտալիստական եր-



կրների՝ Անգլիայի և Արևմտյան Գերմանիայի ժամանակակից մակարդակը և դրանով իսկ Եվրոպայում կգրավի առաջին տեղը։ Դրա հետ միասին 1965 թվականին ՍՍՌՄ-ը արտադրանքի ամենակարևոր մի քանի տեսակների բացարձակ արտադրությամբ կգերազանցի, իսկ մյուս արտադրանքների արտադրությամբ կմոտենա ԱՄՆ-ի արդյունաբերական արտադրության ներկա մակարդակին, իսկ, մինչև այդ ժամանակը, ամբողջությամբ վերցրած, գյուղատնտեսության կարևորագույն արտադրանքների և բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքների արտադրությամբ կգերազանցի ԱՄՆ-ի ժամանակակից մակարդակը։

Յոթնամյա պլանի կատարումը կնշանակի սոցիալիզմի համաշխարհային սիստեմի հզորության հետագա ամրապնդում։

Յոթնամյա պլանի կատարումով զգալիորեն կաճի Սովետական Միության և սոցիալիզմի ամբողջ սիստեմի բաժինը համաշխարհային արդյունաբերական արտադրության մեջ։ Այսպես, եթե 1917 թվականին համաշխարհային արդյունաբերական արտադրության մեջ մեր երկրի արդյունաբերական ամբողջ արտադրության տեսակա-

բար կշիռը կազմում էր 3 տոկոսից էլ պակաս, իսկ 1937 թվականին՝ մոտավորապես 10 տոկոս, ապա 1958 թվականին այն կհասնի համարյա 20 տոկոսի, իսկ սոցիալիզմի ամբողջ սիստեմի բաժինը աշխարհի արդյունաբերական ամբողջ արտադրանքի մեջ կկազմի մոտավորապես մեկ երրորդը։ Հաշվումները ցույց են տալիս, որ 1965 թվականին սոցիալիստական երկրները կարտադրեն համաշխարհային արդյունաբերական ամբողջ արտադրանքի կեսից ավելին։ Դրանով իսկ կապահովվի սոցիալիզմի համաշխարհային սիստեմի բացարձակ գերազանցությունը կապիտալիստական սիստեմի նկատմամբ նյութական բարիքների արտադրության բնագավառում։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը մեր երկրում կոմունիզմի կառուցման լենինյան ծրագրի, մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ գաղափարների կենդանի մարմնավորումն է։ Նա կործանիչ հարված է սոցիալիզմի թշնամիներին, բուրժուական գաղափարախոսությանը, միջազգային ռեֆորմիզմին և ռևիզիոնիզմին։ Յոթնամյա պլանը կապիտալիզմի նկատմամբ սոցիալիզմի անխուսափելի հաղթանակի համոզիչ վկայությունն է։



Մեր երկրում ձեռք բերված վիթխարի հաջողությունները արդյունաբերության, գյուղատնտեսության, գիտության ու կուլտուրայի զարգացման, աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացման ասպարեզում սովետական ժողովրդի ստեղծաբար աշխատանքի, Կոմունիստական պարտիայի ղեկավարության, նրա քաղաքական և կազմակերպչական հսկայական գործունեության արդյունքն են։ Ներկայումս է՛լ ավելի է բարձրացել պարտիայի դերը երկրի ամբողջ պետական, հասարակական, տնտեսական ու կուլտուրական կյանքում, է՛լ ավելի են ամրապնդվել պարտիայի միասնությունն ու համախմբվածությունը, անչափ ընդլայնվել են նրա կապերը ժողովրդի հետ, հարստացել է նրա քաղաքական ու կազմակերպչական գործունեության փորձը։

Կոմունիստական շինարարության հարցերը լուծելիս մեր պարտիան, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեն շարունակ խորհրդակցում են բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի հետ, հենվում են նրանց կոլեկտիվ փորձի ու գիտելիքների վրա, ունկնդրում են նրանց առաջարկությունները և քննադատական դիտողությունները։

Մշակելով ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերը, պարտիան այն ներկայացրել է համաժողովրդական քննարկման։ Քննարկման ընթացքը ցույց է տալիս, որ սովետական ժողովուրդը նոր յոթնամյա պլանը ընդունում է որպես իր կենսական գործը և պատրաստակամություն է հայտնում հաջողությամբ կատարելու պարտիայի առաջադրած հոյակապ խնդիրները։ Այդ գործում մեծ են պարտիական կազմակերպությունների, աշխատավորների դեպուտատների Սովետների, արհմիությունների, լենինյան կոմերիտմիության և ագիտատորների անելիքները։ Նրանք պետք է մոբիլիզացնեն աշխատավորներին՝ կատարելու ու գերակատարելու պետական առաջադրանքները յուրաքանչյուր ձեռնարկությունում, կոլտնտեսությունում ու սովխոզում, է՛լ ավելի լայնորեն ծավալեն սոցիալիստական մրցությունը, որը մեր երկրում կոմունիստական շինարարության փորձված մեթոդն է։

Սովետական Միության Կոմունիստական պարտիան դեպի իր XXI համագումարն է գնում նորանոր հաղթանակներով։ XX



համագումարից հետո անցած ժամանակաշրջանը նշանավորվեց մեր պարտիայի կազմակերպող ու ղեկավար դերի հետագա բարձրացմամբ, պարտիական կյանքի լենինյան նորմաների վերականգնմամբ, աշխատավորական մասսաների նոր ակտիվացմամբ։ Մեր պարտիան միահամուռ կերպով ջախջախեց Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի, Բուլգանինի և նրանց հարած Շեպիլովի հակապարտիական խմբին, որը փորձում էր շեղել մեր երկրի զարգացումը լենինյան ուղուց։

Հետևողականորեն ղեկավարվելով XX համագումարի պատմական որոշումներով, մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ ուսմունքով, մեր պարտիան ավելի միաձույլ է դարձել, ավելի է ամրապնդել իր կապերը ժողովրդի հետ։

Հայաստանի աշխատավորներն ամբողջ սովետական ժողովրդի հետ միասին մեծ գոհունակությամբ ընդունեցին ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին ՍՄԿՊ XXI համագումարին ընկեր Խրուշչովի զեկուցման թեզիսները, որոնցում արտացոլված են մեր երկրում կոմունիզմի ծա-

վալուն կառուցման խնդիրները ներկա էտապում։ Յոթնամյակի կոնտրոլ թվերը վառ կերպով ցույց են տալիս Կոմունիստական պարտիայի անսահման հոգատարությունը սովետական ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի անընդհատ բարձրացման նկատմամբ։

Հայաստանի աշխատավորները, սովետական ամբողջ ժողովրդի հետ միասին, ոչ մի ջանք չեն խնայի Կոմունիստական պարտիայի գլխավորությամբ պատվով կատարելու 1959—1965 թվականների յոթնամյակի վիթխարի խնդիրները, որը մի մեծ քայլ կլինի մեր երկրում կոմունիզմի կառուցման գործում։

---

# ՍՍՌՄ ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱՅԻ ՕՐԸ


Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Հայկական ՍՍՌ Արդարադատության մինիստր


Այս տարվա դեկտեմբերի 5-ին լրանում է ՍՍՌՄ Կոնստիտուցիայի ընդունման 22 տարին։ Սովետական Կոնստիտուցիան ամբողջ սովետական իրավունքի հիմնական աղբյուրն է։ Բոլոր օրենքները ելնում են Կոնստիտուցիայի սկզբունքներից։

ՍՍՌՄ առաջին Կոնստիտուցիան, որը ընդունվել էր 1924 թվականին, արտացոլում էր մեր պետության զարգացման առաջին փուլը։ Ուստի այն չէր կարող արդեն համապատասխանել ՍՍՌՄ-ում ստեղծված նոր հասարակական հարաբերություններին, որովհետև 1936 թվականին արմատապես փոխվել էր մեր երկրի դրությունը։ Այդ ժամանակ մասնավոր կապիտալը լիովին դուրս

էր մղվել արդյունաբերությունից և արտադրության սոցիալիստական ձևը ամբողջովին տիրապետող էր դարձել։ Գյուղատնտեսության մեջ հաղթանակել էր նոր տեխնիկայով զինված սոցիալիստական արտադրությունը՝ կոլտնտեսությունների և սովխոզների ձևով։ Կուլակությունը որպես դասակարգ լիովին լիկվիդացված էր։ Այդ առումով էլ պահանջվում էր ընդունել նոր կոնստիտուցիա, որը համապատասխաներ տնտեսական կյանքի փոփոխված պայմաններին, հասարակության նոր դասակարգային կառուցվածքին և մեր պետության նոր խնդիրներին ու ֆունկցիաներին։

Ելնելով դրանից ՀամԿ(բ)Պ Կենտկոմի պլենումը 1935 թվականի փետրվարի մեկին որոշում ընդունեց, թե ինչ ուղղությամբ պետք է փոփոխություններ մտցվեն գործող կոնստիտուցիայի մեջ, և հարցը դրվեց Սովետների VII համագումարի քննությանը։

ՍՍՌՄ Սովետների VII համագումարի որոշման հիման վրա Սովետական Միության Կենտրոնական Գործադիր Կոմիտեի VII գումարման առաջին սեսիան 1935 թվականի փետրվարի 7-ին կազմեց կոնստիտուցիոն հանձնաժողով։ Հանձնաժողովի կողմից նա-



խապատրաստված նախագիծը հավանություն գտավ ՀամԿ(բ)Պ Կենտկոմի 1936 թվականի հունիսյան պլենումի և ՍՍՌՄ Կենտրոնական Գործադիր Կոմիտեի Նախագահության կողմից, և այն հրապարակվեց համաժողովրդական քննարկման համար, որը հինգ ամսից ավելի տևեց։ Միլիոնավոր սովետական քաղաքացիներ ակտիվ մասնակցություն ունեցան այդ քննարկմանը։ Չեղավ այնպիսի ձեռնարկություն, հիմնարկություն, կոլտնտեսություն, զորամաս, ուսումնական հաստատություն, որտեղ քննության առնված չլիներ կոնստիտուցիայի նախագիծը։ Կոնստիտուցիայի նախագծի մասսայական քննարկումը մեկ անգամ ևս ցույց տվեց Սովետական իշխանության իսկական դեմոկրատական էությունը։

Մի շարք ուղղումներ և լրացումներ ստացվեցին աշխատավորներից, որոնցից մի քանիսը հետագայում ընդունվեցին Սովետների համամիութենական VIII համագումարի կողմից։ 1936 թվականի դեկտեմբերի 5-ին հաստատվեց ՍՍՌՄ նոր Կոնստիտուցիան։ Կոնստիտուցիայի [illegible] դեկտեմ-



թերի 5-ը, ՍՍՌՄ-ում համարվում է համաժողովրդական տոն։

Մեր Կոնստիտուցիան սովետական բազմազգ պետության հիմնական օրենքն է և արտահայտում է մեր աշխատավորության կամքը։

Սովետական Կոնստիտուցիան ՍՍՌՄ աշխատավորներին տրամադրում է մեծ իրավունքներ՝ աշխատանքի իրավունք, հանգստի իրավունք, կրթության իրավունք, նյութական ապահովության իրավունք, ծերության ժամանակ, ինչպես և հիվանդության ու աշխատունակությունը կորցնելու դեպքում կենսաթոշակ ստանալու իրավունք։ Կոնստիտուցիան սահմանում է կանանց իրավահավասարությունը տղամարդկանց հետ՝ տնտեսական, հասարակական-քաղաքական կյանքի բոլոր բնագավառներում, քաղաքացիների իրավահավասարությունն անկախ նրանց ազգությունից և ռասայից։ Մեր Կոնստիտուցիան երաշխավորում է քաղաքացիների անձի, բնակարանի անձեռնմխելիությունն ու նամակագրության գաղտնիությունը։ Կոնստիտուցիան ՍՍՌՄ քաղաքացիների համար ապահովում է խղճի ազատություն, խոսքի ազատություն, մամուլի, ժողովների



ու միտինգների ազատություն, փողոցային երթերի ու ցույցերի ազատություն։

ՍՍՌՄ քաղաքացիների համար ապահովվում է նաև հասարակական կազմակերպությունների՝ արհմիությունների, կոոպերատիվ և այլ կազմակերպությունների մեջ միավորվելու իրավունք։ Բանվոր դասակարգի շարքերից ու աշխատավորների մյուս խավերից ավելի ակտիվ ու գիտակից քաղաքացիները համախմբվում են Սովետական Միության Կոմունիստական պարտիայի մեջ։

Սովետական քաղաքացիների համար հիշյալ իրավունքների ու ազատությունների իրականացումը ապահովվում է իրական, նյութական բոլոր երաշխիքներով։ Սովետական քրեական, քաղաքացիական, աշխատանքային և մյուս օրենսդրությունը, որոնք ելնում են Կոնստիտուցիայի սկզբունքներից, լրիվ կերպով ապահովում են քաղաքացիների համար Կոնստիտուցիայով նախատեսնված իրավունքների ու ազատությունների ռեալ իրականացումը։

Բուրժուական դեմոկրատիայի պաշտպանները շատ են խոսում «ազատությունների» մասին, որոնք իբր գոյություն ունեն կապիտալիստական երկրներում։ Սակայն ինչ ա-

ազատության կամ դեմոկրատիայի մասին կարող է խոսք լինել, երբ աշխատավորը քրտինք է թափում կապիտալիստի համար։

Բուրժուական երկրներում «դեմոկրատական իրավունքները ու ազատությունները» աշխատավորների համար դատարկ հնչյուն են։ Բուրժուական դեմոկրատիան, դեմոկրատիա է շահագործողների ու հարուստների համար, բռնակալ դիկտատուրա է աշխատավորության ելույթները ճնշելու համար։ Բուրժուական «դեմոկրատիան և ազատությունները» ոչ այլ ինչ են, եթե ոչ կեղծություն և խաբեություն։

ՍՍՌՄ-ում ոչ թե գույքային դրությունը, ո՛չ թե ազգային ծագումը, ո՛չ թե սեռը, ո՛չ թե պաշտոնական դրությունը, այլ յուրաքանչյուր քաղաքացու անձնական ընդունակությունները ու նրա անձնական աշխատանքն է որոշում նրա դրությունը հասարակության մեջ։

Մեզ մոտ պետական իշխանության բոլոր օրգանները վերևից ներքև ընտրովի են։ Այդ ընտրությունները իսկապես ազատ և արդարև դեմոկրատական են։ Սովետական Միությունում ինքը՝ ժողովուրդն է կազմակերպում իշխանության օրգանների ընտրու-



թյունները, ինքը ժողովուրդն է ընտրում դեպուտատներ, որոնք ժողովրդի ծոցից ելած մեր աշխատավորության լավագույն ներկայացուցիչներն են։

Պետական իշխանության բարձրագույն օրգաններում, ինչպես և տեղական Սովետներում ընտրված դեպուտատների ճնշող մեծամասնությունը մեզ մոտ շարքային բանվորներ, կոլտնտեսականներ ու սովետական ինտելիգենցիայի ներկայացուցիչներ են։ ՍՍՌՄ Կոնստիտուցիան սահմանում է, որ դեպուտատը հաշվետու է իր ընտրողների առաջ և իր պարտականություններից կարող է ետ կանչվել ընտրողների կողմից։

Բուրժուական երկրներում պետական իշխանության օրգանների ընտրությունները ընթանում են աշխատավորների վրա տիրող դասակարգի կողմից ճնշում գործադրելու պայմաններում։ Կաշառումը, սպառնալիքն ու խաբեբայությունը ընտրությունների մշտական ուղեկիցն են ԱՄՆ-ում, Անգլիայում և այլ բուրժուական երկրներում։ Նրանց մոտ խոսք անգամ չի կարող լինել ընտրողների առաջ դեպուտատների ունեցած պատասխանատվության մասին, և օրենքները թույլ չեն

տալիս նրանց ետ կանչելը ընտրողների կողմից։

Դեպուտատների և ընտրողների միջև նման փոխհարաբերությունների առկայությունը չափազանց ձեռնտու է բուրժուազիայի համար։

Սովետական Միությունում դեպուտատը ժողովրդի ծառան է, նրա կամքի արտահայտիչը։ Ժողովրդին վերապահվող նման կարգի իրավունքներն ու ազատությունները, որոնք ապահովվում են կյանքում, հատուկ է միայն սոցիալիստական տիպի պետության կառուցվածքին։

Սովետական քաղաքացիներին վերապահվող մեծ իրավունքների կողքին, ՍՍՌՄ Կոնստիտուցիան նրանց վրա դնում է նաև խոշոր պարտականություններ։ ՍՍՌՄ քաղաքացին պարտավոր է՝ պահպանել սովետական Կոնստիտուցիան՝ սոցիալիստական հասարակության Հիմնական օրենքը, կատարել սովետական օրենքները, որոնք արտահայտում են ժողովրդի կամքը և պաշտպանում աշխատավորների նվաճումները ներքին ու արտաքին թշնամիների ամեն տեսակ ոտնձգություններից, ամրապնդել աշխատանքի կարգապահությունը, ազնվորեն վերաբերվել հասարակական



պարտքին, հարգել սոցիալիստական համակեցության կանոնները։

Սոցիալիստական սեփականությունը սովետական հասարակարգի սրբազան և անձեռնմխելի հիմքն է։ Պահպանել և ամրապնդել պետական ու հանրային, սոցիալիստական սեփականությունը, յուրաքանչյուր սովետական քաղաքացու սրբազան պարտականությունն է։ Կոնստիտուցիան հռչակում է, որ հանրային սոցիալիստական սեփականության դեմ ոտնձգություն կատարող անձինք ժողովրդի թշնամիներ են։

Զինվորական ծառայությունը ՍՍՌՄ քաղաքացիների պատվավոր պարտականությունն է։ Հայրենիքի պաշտպանությունը ՍՍՌՄ յուրաքանչյուր քաղաքացու սրբազան պարտքն է։ Հայրենական Մեծ պատերազմում Սովետական Միության բազմազգ ժողովուրդները ազնվորեն և անձնազոհաբար կատարեցին այդ սրբազան պարտքը։ Ռազմաճակատում հերոսաբար պայքարելով ֆաշիստական ագրեսորների դեմ, թիկունքում աշխատելով առանձ ձեռքերը ծալելու, Կոմունիստական պարտիայի կողմից ղեկավարվող սովետական մարդիկ հասան համաշխարհային պատմական հաղթանակի։

Կատարելով իրենց պարտքը Հայրենիքի նկատմամբ, սովետական ժողովուրդները խաղաղ տարիների ընթացքում ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում հասել են վիթխարի հաջողությունների։

Ներկայումս սովետական ժողովուրդը և մեր ռեսպուբլիկայի աշխատավորները ծավալելով սոցիալիստական մրցություն ի պատիվ ՍՄԿԿ XXI և ՀԿԿ XX համագումարների, արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության, տրանսպորտի ու ժողովրդական տնտեսության մյուս բնագավառներում ձեռք են բերում նորանոր նվաճումներ։

---

СОДЕРЖАНИЕ



---

Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ